1917 № 28—ՅՈՒԼԻՍԻ 23 ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԳՐԱԿԱՆ ԵՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 կոպէկ Լոյս է տեսնում կիրակի օրերը 10 կոպէկ



ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 3 ռուբլի. Արտասահման՝ տարեկան 5 ռ., կէս տարուան 3 ռ.

ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝ Թիֆլիս, Արտասրադեան հրապար. № 7· Հեռախօս № 29.

Պոստի հասցէն.— Тифлисъ, „Амбаваберъ", Tiflis, Rédaction du journal «Hambavaber».

ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝ տողին 10 կոպէկ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2, բացի կիրակի և տօն օրերից. Տպագրւելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման:

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԻՑ

Անդրկովկասում տիրապետող սարսափելի թանգութիւնը ամենամեծ չափով անդրադարձել է տպագրական և հրատարակչական գործի վրայ։

Տպագրութեան, թղթի և գրաշարների ծախսերը այժմ մի քանի անգամ աւելացել են։ Բոլոր պարբերական հրատարակութիւնները նիւթական ծանր ճգնաժամ են ապրում. շատերը նոյնիսկ ենթակայ են խափանման։

Թերթերի տպագրութեան և հրատարակութեան գործը, նախկին բաժանորդագներով այլևս անհնարին է առաջ տանել։

Շատ թերթեր վաղուց պիտի դադարէին, եթէ չաւելացնէին իրենց բաժանորդագինն և չունենային համակիրների լայն աջակցութիւնը։

«Համբաւաբերն» էլ նիւթական ծանր ճգնաժամ է ապրում։ Իւրաքանչիւր համարի ծախսը այժմ քառապատկուել ու հնգապատկուել է և գնալով աւելի պիտի թանկանայ։

Հակառակ տիրապետող թանգութեան և տպագրական ծանր պայմաններին, խմբագրութիւնս բաժանորդագինը թողեց նոյնը, չորս ռուբլի։ Միայն տպարան և գրաշար հարկաւոր չափով չը գտնելու համար, ստիպուած եղանք ամառուայ ամիսներին թերթը հրատարակել ութը երեսից բաղկացած։ Առաջիկայ աշնան, թերթի հրատարակութեան բարեյաջող դէպքում, թերթը կը դարձնենք 12 երես, ինչ որ խոստացել էինք։

Չորս ռուբլի բաժանորդագին, շատ չնչին վճար է, եթէ համեմատենք այն իւրաքանչիւր համարի համար մեր ծախսած գումարի հետ։ Մինչև օրս խմբագրութիւնս շարունակել է իր ստանձնած ծանր գործը և աշխատել է խուսափել դիմումներից։

Բայց նկատի ունենալով թերթի տպագրութեան համար ներկայումս ստեղծուած պայմանները. նկատի ունենալով նաև «Համբաւաբերի» գաւառներում և ժողովրդական լայն շրջաններում գտած համակրութիւնն ու ընդունելութիւնը, ստիպուած ենք դիմել Կ. Հ. Բ. Ընկերութեան ճիւղերի, բաժանորդների և համակիրների աջակցութեան և օգնութեան։

«Համբաւաբեր»-ին լինելիք օգնութեան գործը կայանում է հետևեալում.

1) Ցանկալի է, որ մեր Ընկերութեան ամեն մի ճիւղ

իրեն համար պարտք համարի ուղարկել մի որոշ գումար՝ Ընկերութեան թերթի ծախսերը ծածկելու համար։

2) Ցանկալի է, որ ճիւղերի վարչութիւնները, բաժանորդները և համակիրները աշխատեն աւելի տարածել թերթը իրենց շրջանում, թէև տարածումն կատարւում է նկատելի կերպով, ինչ որ ապացուցանում է թէ մեր թերթը գնահատւում է ընթերցող հասարակութեան կողմից։

3) Խնդրում ենք, որ իւրաքանչիւր բաժանորդ իրեն համար պարտք համարի բաժանորդագինը աւելացնել 2 ռուբլով և աւելացրած գումարն ուղարկել խմբագրութեանս։

Կ. Հ. Բ. Ընկերութիւնը մի հսկայ կազմակերպութիւն է կովկասահայ իրականութեան մէջ և ունի բազմաթիւ ճիւղեր և համակրողներ։ Եթէ երբեք վերջիններս ջանք և աշխատանք թափեն թերթի տարածման և տպագրութեան ծախսերի հայթայթման գործում, մենք վստահ ենք, որ «Համբաւաբերի» հրատարակութիւնը պիտի ապահովուի և խմբագրութիւնն էլ իր կողմից պիտի կարողանայ նրա ծաւալն ընդարձակել և աւելի լայն տեղ տալ գաւառական կեանքի և մեր ճիւղերի գործունէութեան նկարագրութեան։

Աւելորդ ենք համարում յայտնել, որ ստացուած նուէրների, ճիւղերի և համակիրների այդ ուղղութեամբ կատարած աշխատանքների և աւելացրած բաժնեգների մասին պիտի յայտարարուի «Համբաւաբերում»։

## ՄԻԱՄՏՈՒԹԻ՞ՒՆ ԹԷ ՊԱՐԶԱՄՏՈՒԹԻՒՆ

Պետական Գործակալութիւնը տեղեկութիւն է ստացել, որ Գերմանիան իր վերջին յարձակումն սկսած է Ռուսաստանի ներքին կեանքի մասին տեղեկութիւններ ստանալուց յետոյ…։

Չը գիտէ մարդս զարմանայ թէ ծիծաղի ռուս կառավարութեան և առհասարակ ղեկավարող շրջանների այս միամիտ և ուշացած յայտարարութեանը վրայ։

Որ Գերմանիային յայտնի է Ռուսաստանում տեղի ունեցող ամենափոքրիկ շարժումն անգամ, որ նա գիտէ ռուս կառավարութեան, զօրքի, ժողովրդի, պարենաւորման, ներքին խռովութիւնների և ազգամիջեան թշնամութիւնների բոլոր անցուդարձերը, որ նա իր ամենավարպետ կերպով կազմակերպած լրտեսութեան միջոցով թափանցում է ամեն րոպէ և ամեն ակնթարթ Ռուսաստանի կեանքի բոլոր մանրամասնութիւններին, դա նորութիւն չէ և այդ բանը գոյութիւն ունի պատերազմի սկզբից, կամ աւելի ճիշտ՝ պատերազմից շատ ու շատ առաջ։

Ցարիզմի ժամանակ ռուս կառավարութեան ամենապատասխանատու պաշտօնեաներն ու ներկայացուցիչներն անգամ դարձան գերմանական ազենտներ և խայտառակեցին ամբողջ պետութիւնը, քայքայելով ու կործանելով նրան թէ թիկունքում և թէ ճակատում։

Սուխոմլինովի՝ Ռուսիոյ նախկին զինուորական մինիստրի (sic) դաւաճանութիւնը դեռ թարմ է մեր մտքերի մէջ. Գերմանիոյ լրտեսական ոյժը թափանցել էր հին կառավարութեան բիւրոկրատիայի ամենաբարձր և ամենաազդեցիկ շրջանները։

Նա մի աներևոյթ, բայց շլացնող հեղուկի նման թափանցում է ամենանուրբ վարագոյրներից ներս, մինչև իսկ ցարի հարեմը և սողոսկում թագուհու թունաւորուած որջի մէջ։

Այդ դեռ հին կառավարութեան օրով էր։ Նոր, յեղափոխական և ազատական կառավարութիւնն էլ ունեցաւ իր դաւաճանները և դժբաղդաբար աւելի վնասակար ու կատաղի։

Այնպիսի դաւաճաններ, որոնք վարագուրուած էին «ընկերվարական», «գաղափարական» դիմակի տակ և որոնց գոյութիւնը յաւիտենական նախատինք պիտի մնայ Ռուսաստանի համար։

Մի Լենին և իւր տխրահռչակ համհարզները՝ երկրում կատարեցին այնպիսի գործեր, որոնք ամենածանր կերպով անդրադարձան երկրի քայքայման վրայ և պատրաստեցին Ռուսաստանի համար մի հսկայական անդունդ, որի մէջ չընկնելու համար այժմ յուսահատական և օրհասական փորձեր է կատարում կառավարութիւնը։

Եւ զարմանալի բան։ Ռուսիան ընդունակ եղաւ և՛ ծայրայեղ գաղափարական, անձնուէր, և՛ ծայրայեղ դաւաճան, հայրենադաւ ղեկավարներ արտադրել։ Ե՛ւ ծայրայեղ ցարական կառավարութիւն և՛ ծայրայեղ յեղափոխական ժողովրդապետութիւն ունենալ…։ Այս երևոյթը ոչ թէ դրական մի յատկանիշ է մեր երկրի համար, այլ մի վերին աստիճանի բացասական և վնասակար մի ընդունակութիւն, որ տուեց իր դառն արդիւնքները։

Երբոր մի ամբողջ կուսակցութեան, մի ամբողջ դասակարգի ղեկավարը յանկարծ իջնում է իր գաղափարական բարձունքից և դառնում հայրենիքի դաւաճան, երբ յեղափոխականը դառնում է ոսկու ստրուկ, բիւրոկրատը՝ ընկերվարական, գարագավոյն՝ իշխանաւոր, աւազակն՝ երկրի տէրն ու տնօրէն, վա՜յ այն երկրին ու հայրենիքին, նրան հազիւ թէ փրկութիւն լինի։

Ռուսաստանի արդի կեանքը այնքան յարափոփոխ, այնքան խառնափնթոր է, մարդկանց գաղափարներն ու մտայնութիւնը այն աստիճան յեղյեղուկ, դասակարգերու հոգեբանութիւնն այնքան խղճալի, զինուորի, ղեկավարի ու ղեկավարուողի հասկացողութիւնը այլասերուած, ժողովրդի հայրենասիրութեան զգացումը այնքան խարխլած է, որ չկայ մի առողջ ոյժ, մի ուժեղ յենարան, որ կարողանաս յենուել նրան և ազատել երկիրը։

Այդ բոլորից յետոյ որքան զարմանալի և ծիծաղելի է նաև կառավարութեան յայտարարութիւնը այն մասին թէ գերմանացիները գիտեն մեր շարժումների և կեանքի մասին։ Մի՞թէ այդ յիշողութիւնը նոր միայն յայտնի եղաւ, մի՞թէ անցեալի ու ներկայի սարսափելի փորձերը դաս չեղան, ապացոյցներ չը կային և հիմա միայն մեռասաներորդ ժամին կազմուեց այն համոզումը թէ թշնամին ծանօթ է մեր երկրի ներքին կեանքին…։

Թշնամին ոչ միայն ծանօթ է մեր ներքին կեանքին, այլ թող ներուի մեզ ասել, ղեկավարում է մեր երկիրը, նա էր որ ծրագրեց յուլիսեան սարսափելի խռովութիւնները, նա էր որ պատրաստեց հակայեղափոխականութեան հրդեհը, ապա ուրեմն նա է ղեկավարում մեր երկրի այն գործերը, որոնք մեր հայրենիքի կործանման են նպաստում։

Երկրի ամեն կողմ, ամեն մէկ անկիւն թշնամու գործակալներ են վխտում։ Նրանք ամեն գոյնի, ձևի, դասակարգի և աստիճանի են և խտրութիւն չեն դնում ամեն տեսակ միջոցի մէջ։

Կառավարութիւնը փոխանակ միամիտ և ուշացած յայտարարութիւններ անելու այդ մասին, փոխանակ ամենափոքրիկ երեխային անգամ յայտնի այդ իրողութիւնը ստուգելու և հաղորդելու, պէտք է կտրուկ և վճռական միջոցների ձեռնարկէ թշնամու լրտեսական անյաղթելի ոյժին դէմ։

Կառավարութեան մահացու հարուածը պէտք է ծառանայ

ամենածայրայեղ յեղափոխականից սկսեալ ամենաբարձր պաշտօնեայի դէմ, եթէ նա դաւաճանում է և ծախում մեր երկիրը կատաղի և արիւնարբու թշնամուն։

Մահացու հարուած լրտեսութեան ու դաւաճանութեան։ Ահա թէ ինչն է կարևորը և անյետաձգելին։

Պարզամիտ և ուշացած յայտարարութիւնները օգուտ չունին։

Ծ. Թորգոմեան

# ՀԱՅԿԱԿԱՆ ԵՂԵՌՆԸ

(ՀԱՆՐԻ ԲԱՐԲԻԻ ԳԻՐՔԸ)

Հայկական վերջին ահռելի ջարդերի համար քաղաքակիրթ աշխարհում ցասումի և բողոքի բազմաթիւ ձայներ բարձրացան։ Անգլիացի մեծ մարդասէր Լորդ-Բրայսի հրատարակած «Կապոյտ Գիրքը» մէկն է այն գեղեցիկ հրատարակութիւններից, որոնց մէջ պերճախօս փաստերով և իրական գոյներով պատկերացած են թիւրքահայ ժողովրդի վերջին անագորոյն ողբերգութիւնը և գերմանօ-թիւրք բարբարոսների գործած աննկարագրելի ոճրագործութիւնները։

Ֆրանսայում հրատարակուող «Journal» թերթի պատերազմական թղթակից և ծանօթ հրապարակախօս Հանրի Բարբին լոյս է ընծայել «Արհաւիրքի երկիր» անունով մի ստուար աշխատութիւն՝ հայկական կոտորածներին ու եղեռնին նուիրուած։

Գիրքը բաղկացած է 260 էջից. հեղինակը անձնապէս եղել է դէպքերի վայրերում և ականատես եղել յօշոտուած Հայաստանի և նրա հալածական որդիների տանջանքներին։

Գրքում զետեղուած են հայ կամաւորական խմբերի, խմբապետների, կոտորածների մի քանի պատկերներ։ Նկարագրուած են մի քանի վայրերի ջարդերն ու տեղահանութիւնները ականատես վկաների պատմութեամբ։

Հանրի-Բարբին (գրքի հեղինակը) մի քանի գլուխ նուիրել է նաև թիւրքահայ ժողովրդի կուլտուրական դերին Տաճկաստանում, նրա ապագայի ու ներկայ վիճակի մասին։ Այդ յօդուածներում շօշափուած էական մտքերի մասին ուրիշ անգամ պիտի խօսինք, առայժմ կարևոր ենք համարում թարգմանել և „Համբաւաբեր"-ի ընթերցողներին ծանօթացնել գրքի յառաջաբանը կազմող մի կարճ յօդուածի հետ, որ գրել է ֆրանսական պատգամաւորական խորհրդի նախագահ Պօլ Դէշանէլը։

«Արհաւիրքի երկիր» գիրքը—գրում է Պօլ-Դէշանէլը—Հայաստանի նորագոյն մարտիրոսագրութեան պատմութիւնն է, մինչև այժմ պատահածներից ամենասարսափելին։ 1915-ի սկզբնաւորութեան, Տաճկաստանում ապրում էր երկու միլիոն հայ ժողովուրդ, որից հազիւ միայն 900,000-ը վերապրում է։ Այս միլիոն մարդկանց սպանութիւնը կատարուած է ամենաամօթալի անգթութեամբ։ Սրանք բոլորը սպանուած են։ Շատերը աքսորուեցին հեռաւոր վայրեր։ Մեռնողները նուազ դժբաղդ եղան, որովհետև իրենց տառապանքը կարճ եղաւ։ Հարիւր հազարաւորները տարագրուեցին և ենթարկուեցին մահուան, սուինահարութեան, անօթութեան, խոշտանգումի ու չարչարանքի, որի համար Թիւրքիան Գերմանիոյ հետ կրելու է յաւիտենական նախատինք։

«Պ. Հանրի-Բարբին նկարագրել է սովից տառապող, օգնութիւն պաղատող, բարոյական ու ֆիզիքական տառապանքների ենթարկուած տարագիրների ողբալի կացութիւնը։ Նա տեսել է, իրենց մորթուած ծնողների և աւերուած գիւղերը փնտրող թափառական, վտիտ (hâve) և ծիւրած (décharné) երեխաների խմբերին։ Նա նկարել է Եփրատի երկայնքնիվար տարածուող տառապանքի վայրերը, ուր անապաստան, գրեթէ առանց ուտեստի, ձմեռուայ մահաշունչ ցրտին և ամառուայ սարսափելի շոգին ենթարկուած՝ կանայք և տղամարդիկ էին մեռնում, իրենց պահապան թիւրքերի աչքին առջև։ Այս գրքի բոլոր էջերը հաստատում են ողբերգական փաստաթղթերը։ Սա մի փաստագիրք է ականատես վկայի կողմից հաւաքուած։ Կ. Պոլսում, ինչպէս նաև Բերլինում պիտի փորձեն չքմեղանալ, շատ անգամ կիրառուած մեթոդին հետևելով և փաստարկելով, որ հայերին կոտորեցին երկիրը պաշտպանելու համար։ Բայց սուտը անկարող է յաղթել, հայերը պրովոկատոր չեն եղել բնաւ, նրանք եղել են զոհերը միայն։ Հայկական կոտորածն կատարուեց նախապէս շատ խնամով մշակուած մի ծրագրով. ոճրագործութիւնը սիստեմատիկ կերպով առաջ տարուեց և ոչ մի քաղաք, ոչ մի գիւղ, ոչ մի ընտանիք չը խնայուեց։ Արիւնը ամենուրեք հոսեց։ Պ. Բարբիի վկայութիւնը, ուրիշ շատ վկայութիւնների հետ պիտի ծանրանայ այդ մեծ ժողովուրդի դահիճների վրայ։

«Հայաստանի բնաջնջումն էր կամենում կարմիր սուլթանի վատահամբաւ ծրագիրը, նոյն բանը ուզում են երիտասարդ թիւրքերը, իրենց երկիրն ձերբազատելու և Գերմանիոյ ստրուկ դարձնելու համար։ Կ. Պոլսոյ քաղաքական ռեժիմը կարողացաւ անունով փոխուել միայն, բայց կարգերը, ինչպէս նաև մարդիկ մնացին նոյնը։ Թրքական վարչակազմը արժանի է գերմանական վարչակազմի նախանձին։ Թէ մէկի և թէ միւսի մօտ, միևնոյն բարբարոսութիւնը, արդարութեան և ազնուականութեան միևնոյն պակասութիւնը։ Ինչ որ Թիւրքիան գերմանացիներից դըրդուած արեց Հայաստանում, նոյնը Գերմանիան գործադրում է ամենուրեք։

«Ամբողջ քաղաքակիրթ աշխարհին յայտնի հայկական մարտիրոսագրութեան վրէժը պիտի լուծուի։ Անկարելի է որ այսքան սարսափելի ոճիրները մնան անպատիժ։ Աշխարհը չի կարող նրանց մոռանալ։ Բայց միայն հայերը չեն, որ ենթարկուեցին Թիւրքիոյ մոլեգնութեան։

«Վանայ մեր ֆրանսացի Դոմինիքեան առաքելութիւնն (mission) էլ ենթարկուեց անգութ խոշտանգման։ Մարտէնի հայ կաթոլիկ եպիսկոպոսը իւր համայնքի մի մասի հետ կոտորուեց և այդ քաղաքում հաստատուած ֆրանսացի հայրերից (pères) ոչ մի տեղեկութիւն չկայ։ Մ. Իսրայէլեան, Խարփութի կաթոլիկ եպիսկոպոսը, աքսորի ճանապարհին Ուրֆայի և Դիարբէքիրի միջև, իրեն հետ եղող մարդկանց, քահանաների և կրօնաւորների մի մասի հետ սպանուեցին։ Մալաթիացի Խաչատրեան (կաթոլիկ կրօնաւոր) մորթուած է։ Մորթուած են նաև Սղերդի բոլոր խալդէացի և սիրիացի քահանաները։ Ջէզիրէի խալդէացի և սիրիացի եպիսկոպոսները, Մէդիաթի, Սէվաքի, Տէրէքէի և Վերան Շահիրի քահանաները ամենքն էլ սպանուած են։ Մեր եկեղեցական ներկայացուցիչների բոլոր հաստատութիւնները աւերուած և կողոպտուած են։ Վանում մասնաւորապէս՝ ֆրանսական դոմինիկեանների բնակարանները 1915-ի ապրիլին, թիւրք բաշիբօզուկները վերածեցին դիրքերի։

«Թիւրքիան ու Գերմանիան պարտաւոր են բոլոր այս եղեռնագործութիւնները փոխարինելու։

«Մի մեծ անիրաւութեան հատուցումն պիտի լինի եթէ դաշնակիցները Հայաստանն ազատեն օսմանեան լծից։ Կարճ ժամանակից արդարութիւնը երևան պիտի գայ։ Հայ ազգը, որի հետ մենք կապուած ենք բազմաթիւ յիշատակներով, իր քաշած արիւնալի մարտիրոսագրութիւններից յետոյ, միւս ճնշուած ժողովուրդների նման, պիտի տեսնէ մի օր ազատութեան լուսապայծառ ժամը»։

Թորգոմ

## ԹԻՖԼԻՍԻ ՔԱՂԱՔԱՅԻՆ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Ռուսական մեծ յեղափոխութիւնից յետոյ Թիֆլիսի մէջ քաղաքային ընտրութիւնների օրը՝ յուլիս 30-ը մի բացառիկ օր է, որտեղ քաղաքի ազգաբնակչութիւնը հանդէս է գալու իր շահերի բովանդակ գիտակցութեամբ։ Այս անգամուայ դուման նման չի լինելու յեղափոխութիւնից առաջ եղած դումաներին, որոնք ժողովրդի միայն մի խաւի արտայայտութիւնն էին հանդիսանում, այլ լինելու է Թիֆլիսի ամբողջ բնակչութեան արտայայտութիւնը՝ առանց ազգի, սեռի, ցեղի, կրթութեան և կարողութեան խտրութեան։ Եւ քանի որ այդ այդպէս է, ապա պարզ է, որ ընտրութեան օրը և ոչ մի մարդ բարոյական իրաւունք չունի չըգնալու իր ընտրական թաղամասը. այն մարդը, որ իր մասին չի մտածում, արժանի էլ չէ, որ ուրիշները մտածեն նրա մասին։ Ժողովուրդը իր կողմից պահանջ է դնելու, որ ամենից առաջ, այս դուման լինելու է յեղափոխական իր ամբողջ բնոյթով և կըրելու է ժողովրդի լի ու լի վստահութիւնը։ Այնուհետև առաջարկելիք իրաւասունները պաշտպանելու են աշխատաւոր մասսայի շահերը. այդ հողի վրայ շատ, շատ աշխատանք կայ կատարելու։ Իսկ այդ այդպէս կը լինի այն ժամանակ, երբ իրաւասունները ամբողջովին կը նուիրուեն քաղաքի բարեկեցութեան և իրենց ուսերի վրայ կը կրեն Թիֆլիսի աշխատաւոր դասակարգի բոլոր հոգսերը։ Բանուորների անմխիթար վիճակը, բնակարանային տագնապը, մթերքների սովը և մատակարարման կամայականութիւնները, դպրոցական ազգայնացման հարցը, ֆինանսական անկանոնութիւնները, առողջապահական դրութիւնը, ահաւասիկ հրատապ և մագնիսացած հարցեր, որոնց անմիջապէս պատասխան պիտի տայ դուման և անմիջապէս գործի անցնի։ Այս, բոլորը պարզօրէն և որոշակի մատնանշուած է դաշնակցութեան պլատֆորմի մէջ, որն արդէն լոյս է տեսել մի քանի պարբերականներում։ Մեր իրականութեան մէջ միակ ուժեղ և յարատև կուսակցութիւնը, որ ի նկատի ունի հայ ժողովրդի աշխատաւոր մասսայի շահերը, և այդ ուղղութեամբ տանում է իր աշխատանքները, դաշնակցութիւնն է, որ հանդէս է եկել № 4 ցուցակով։ Կասկած չի կարող լինել, որ Թիֆլիսի հայ աշխատաւորները, դաշնակցական անհատները և համակրողները, իրենց ձայնը կըտան այդ ցուցակին, որովհետև կերևայ թէ որքան կարող, ուժեղ և կազմակերպուած, յարգուած է այդ կուսակցութիւնը։

Քաղաքացիներ, յուլիսի 30-ը ձերն է, պաշտպանեցէք ձեր շահերը։

Գիսակ

## ԳՐԱԿԱՆ ԱԿՆԱՐԿՆԵՐ*)

### III

Ուրեմն մահմեդականների հին, շատ հին, կրօնի սկզբնաւորութեան օրերին կազմուած ու կազմակերպուած օրէնքների ժողովածուն կոչւում էր շարիաթ և այդ շարիաթովն է, որ նրանք ղեկավարւում են իրենց կենցաղի մէջ դարերից ի վեր։ Այդ հնադարեան օրէնքներն են, որ գծում են մեր դրացի մահմեդական ցեղերի ուղին, ներշնչում են այս ու այն վարմունքը, թելադրում են նրանց նիստն ու կացը, սովորութիւնները և, որը ցաւալին է, արձանացնում են միևնոյն կէտի վրայ և արհամարհանք ներշնչում դէպի ամեն քաղաքակրթութիւն, դէպի ամեն կուլտուրական քայլ։

*) Տես «Համբաւաբեր» № 27։

«Ըստ էութեան՝ շարիաթը ոչ այլ ինչ է եթէ ոչ՝ Մահմեդի ժամանակուայ Հիջազի արաբների բարքերի և սովորութիւնների ժողովածուն»—այդպէս է ասում յօդուածի հեղինակ Շախթախթինսկին։ Եւ դրա հիման վրայ էլ պիտի ասել ուրեմն, որ շարիաթը, այն օրէնքները, որոնցմով այժմ այնքան համառօրէն ղեկավարւում են մահմեդական ցեղերը մեր միջավայրում—համապատասխան են հին, մինչև—Մահմեդական հեթանոս արաբների ընկերական և իրաւական բարքերին ու սովորութիւններին։ Ղուրանի սահմանած օրէնքներն ու կարգերը, յիրաւի, արաբների մէջ գոյութիւն ունեցող սովորութիւնների և բարքերի կանոնագրութիւնն էր միայն („кодификація существующихъ у нихъ нравовъ и обычаевъ". Ժող. եր. 108)։

Եւ որովհետև նոյն Ղուրանի մէջ բացատրուած ու սահմանուած են նաև մահմեդական կրօնի հիմունքները և յաւիտենական բարոյականի օրէնքները և որովհետև ամբողջ Ղուրանի մէջ ոչ մի տեղ չի ասուած թէ կրօնական այդ հիմունքները անփոփոխ պիտի մնան, իսկ բարքերի և սովորութիւնների օրէնքները կարող են ըստ հարկի ենթարկուել փոփոխութեան—ապա ուրեմն, մահմեդական աստուածաբանների բացատրութեանը համեմատ—Ղուրանի ոչ մի տողը և ոչ մի օրէնքը չի կարող ենթարկուել փոփոխութեան։

Իւրաքանչիւր մահմեդականի համար, հետևապէս հաւատքի էական մասերից մէկն է կազմում թէ «Մահմեդի շարիաթը պիտի գործադրութեան մէջ մնայ մինչև վերջին դատաստանը»։ Մահմեդի Ղուրանը ամբողջովին անփոփոխելի լինելով՝ պիտի մնայ անփոփոխ նաև նրա որ և պատուէրը, որքան որ լինէր այն հազարամեայ հնութեան արտայայտիչ, որքան և լինէր հին, թափառական—անապատային, նոյնիսկ հեթանոս ցեղերի՝ սովորութիւնների և բարքերի արդիւնք։

Իւրաքանչիւր մահմեդականի համար նուիրական է և տառացի կերպով պարտաւորիչ՝ շարիաթի մէն մի օրէնքը։

Բայց ինչպէս արդար զայրոյթով բացականչում է Մահմէդ Շախթախթինսկին—«ստիպել 300 միլիոն մահմեդականներին երկրագնդի ամեն ծայրերում ցրուած և զանազան ազգութիւնների պատկանող, յաճախ իրարից սաստիկ տարբերուող բնաւորութեամբ ու կենցաղով—հարկադրել նրանց, որ ապրեն այնպիսի օրէնքներով, որոնք 14 դար սրանից առաջ եղած փոքրիկ ու անկուլտուրական Հիջազի ցեղերի բարքերի արտայայտութիւններն են միայն—դա այնպիսի անբնական օրէնք է, ինչպէս օրինակ, ստիպել որ մի հիւանդի համար գրուած դեղատոմսով՝ բժշկուեն երկրագնդիս բոլոր հիւանդները յաւիտեանս յաւիտենից» . . .

. . . «Շարիաթը—շարունակում է յօդուածագիրը—բռնականօրէն խլում է մահմեդականից նրա բնական իրաւունքը՝ կանոնաւորելու և կարգի դնելու իր կեանքը, գրելու իր համար պէտք եղած կանոնները։ Շարիաթը ոչնչացնում է այդպիսով մահմեդականների մէջ՝ հաւաքական կամքը, ազգային գիտակցութիւնը, հասարակական կարծիքը, ընդհ. բարօրութեան զգացմունքը, քաղաքացու և մարդկային պարտականութեան հասկացողութիւնը։ Շարիաթը ոչնչացնում է մտածող մարդուն և մարդու մէջ՝ իր սեփական «եսը»։

«Հազար անգամ պակաս կործանարար է քաղաքական բռնակալութիւնը։ Մարդս, այդպիսի բռնակալութեան ենթարկուած լինելով՝ գոնէ ներքնապէս մնում է ազատ, գոնէ երբ հանգամանքները նպաստեն, կարող է բռնութեան լուծը թօթափել իր վրայից։ Իսկ շարիաթի բռնակալութիւնն նրանով է աւելի կործանարար, որ մահմեդականը համարում է նրան ոչ միայն օրինաւոր երևոյթ, այլ մինչև իսկ նուիրական. և դրա համար սկի

չի էլ ձգտում նրա կապերից ազատուել, մտածութիւնովն անգամ չի ձգտում։ Շարիաթը իրական ազատութեան հետ՝ մահմեդականի մէջ ոչնչացնում է նաև միտքը, ազատութեան մասին ունեցած հասկացողութիւնը»... (եր. 109)

Այնուհետև յօդուածագիրը կանգ է առնում, իբր օրինակ, շարիաթի թելադրանքների երկու հնամեայ և կործանարար օրէնքների վրայ՝ մահմեդականութեան համար—բազմակնութեան և հարեմական փակ կեանքի։

«Բազմակնութիւնը վիրաւորում է կանանց մէջ մարդկային արժանապատուութիւնը»։ Բազմակնութեան մէջ է մահմեդականը վարժւում բռնակալութեանը, սարկամտութեան։ Նոր սերունդը մանկութիւնից սովորում է, իր մայրերի նման, սարկական վերաբերմունքի դէպի հայրը, և հայրերի նման, արհամարհական մըտածողութեան՝ դէպի կանայք։ Միևնոյն հօր և զանազան մայրերի որդիների մէջ միշտ կայ անհաշտ ատելութիւն, որ փոխանցւում է յետագայ սերունդին։ Բազմակին մարդիկ արտադրում են թոյլ, վտիտ և պակասաւոր զաւակներ ու այդպիսով վատասերում ազգը։ Բազմակնութիւնը ուժեղապէս նուազեցնում է ազգաբնակութեան աճեցումը և այլն և այլն։

Այդ ամենը արդէն այնքան կրկնուած և տարրական ճշմարտութիւններ են, որ միմիայն ամենակարող և նուիրակ շարիաթի ազդեցութեան շնորհիւ է, որ դեռ ապրում է մահմեդականութեան մէջ և շարունակւում է դարերից ի վեր։

Նոյնը և հարեմական մեղկ կեանքի մասին, ուր «մահմեդականը դառնում է ողորմելի և վախկոտ»։

«Ամենքին յայտնի է—ասում է այդ մասին յօդուածագիրը —որ թիւրք զինուորը օժտուած է ռազմական շատ ընտիր յատկութիւններով։ Սակայն, բոլոր հեղինակաւոր անձերի պնդումովը թիւրք սպան էներգիայից զուրկ է, դիմացկուն չէ և ոչ էլ վճռական ու համարձակ»։ Դրա պատճառը պարզ է.—«զինուորները ժողովրդի և թափառական այն առողջ կանանց զաւակներն են, որոնք եւրոպական կանանց պէս ապրում են ազատութեան մէջ։ Իսկ սպաները՝ հարեմի մէջ մեղկութեան ծոցում թուլացող կանանց զաւակներն են, քաղաքացիներ» (եր. 112)։

Բայց կա՞յ արդեօք միջոց՝ կռուելու այդ կործանարար և հնամեայ օրէնքի դէմ, որ ոչնչացնում է մահմեդական ցեղերի կամքը, ոյժը և հոգին։ Կարելի՞ է արդեօք ազատել մահմեդականներին շարիաթի շղթաներից և դնել նրանց քաղաքակրթութեան այն ուղիի վրայ, որ յառաջադիմական քայլերով և կուլտուրայի տուած բարիքների շնորհիւ կարող է տանել հաւասարուելու Եւրոպական ազգերին, որ կարող է վերջապէս ազատել նրանց մարդկութեան համար իսկ այլևս անհանդուրժելի դարձող շատ պակասութիւններին։

Անշուշտ կայ միջոց, ասում է Շախթախթինսկին։ «Պէտք է միայն, որ մահմեդական ինտելիգենցիան ինքզինքը ամբողջովին նուիրի՝ մուսուլմանական միտքը Ղուրանի ճնշարանից ազատելու գործին»։ Եւ այդ դժուար չէ... երբ միայն անշուշտ կարելի լինի տապալել բոլորովին և կամ թուլացնել մահմեդական այն զօրեղ և ազդեցիկ կրօնաւորութեան ոյժը, որի ամբողջ յենարանն ու նեցուկը շարիաթն է միայն։ Շարիաթի դէմ կռուելը նշանակում է կռուել մահմեդական կրօնաւորութեան և մանաւանդ... մահմեդական շատ և շատ յետամնաց ու կրօնականօրէն, շարիաթականօրէն պնուած մեծ ամբոխի դէմ։

Շատ լաւատես է յարգելի Շախթախթինսկին։ Նրան թըւում է, օրինակ, որ եթէ իրենք—Եւրոպական պետութիւնների մէջ գտնուող մահմեդականները—գործի ձեռնարկեն, իրենք, որ ազատ են «մահմեդական կրօնական ցենզուրից և կարող են առանց վախենալու՝ ամեն բանի անունը տալ»—իրենք սկսեն պրոպագանդան—ապա ուրեմն կարելի է խարխլել շարիաթի հիմունքները և վերածնութեան շրջանը գոյացնել մահմեդական ցեղերի համար։

Այնքա՞ն համակրելի է այդ ցանկութիւնը, որ անշուշտ քաջալերութեան պիտի արժանանայ ամենքի կողմից։ Մենք, հայերըս մանաւանդ, մեր սրտի խորքերից և ամենայն համակրութեամբ պիտի ողջունենք այդպիսի քայլերը, որովհետև մեզ, աւելի քան ուրիշ ազգերին շահաւէտ է, որ մեզ շրջապատող և մեզ հետ ապրող մահմեդականները կուլտուրապէս զարգանան, ազատուեն շարիաթի վնասաբեր ճնշարանից, մտնեն քաղաքակիրթ ազգերի շարքը և մեր բարի դրացութիւնը այդպիսով ընդմիշտ ապահովեն։

Մահմէդ Շախթախթինսկու յօդուածը ըստ ամենայնի արժանի է մեծ ուշադրութեան, իսկ նրա առաջարկներն ու ցանկութիւնները վերին աստիճանի համակրելի։ Ցանկանք, որ շատ և շատ գտնուեն Շախթախթինսկու պէս մտածողներ մահմեդական աշխարհում։

Վ. ՓԱՓԱԶԵԱՆ

## ՏՐԱՊԻԶՈՆԻ ՀԱՅԿ. ԿՈՄ. ՏԵՂԵԿԱԳԻՐԸ

(Հայկ. Կեդր. Կոմիտէին ուղարկուած)

Տրապիզոնի Հայկ. Կոմիտէն իր գոյութիւնը կը պարտի Տըրապիզոնը գրաւող գեն. Լիախովի դէպի հայերը ունեցած բարեացակամ վերաբերմունքին։ Գեներալը տեսնելով Տրապիզոնի հայերին հասած անհելի և աննախընթաց աղէտը, հրամայել էր կազմել հայերից մի յատուկ կոմիտէ, որը հանդիսանար հայ փախըստականների զանազան կարիքները հոգացող և հայկ. շարժական և անշարժ ստացուածքները կառավարող իշխանութիւնը։

Իսկապէս դրութիւնը սարսափելի էր, ամբողջ քաղաքի և շրջանի գիւղերի 18,000 հայ ազգաբնակութիւնից ողջ մնացել էին սարերը ապաստանած մի քանի տասնեակ հայերը միայն։ Բոլոր հայերի տուները, խանութները և պահեստները իրենց մէջ մնացած գոյքերով և ապրանքներով անտէր էին և մատնուած ամենակատաղի թալանի։ Ամբողջ երկու օր, մինչև ռուսների մուտքը, քաղաքը մնացել էր յոյների ձեռքում. և երբեմնի մեծահռչակ «Էլլադայի» այժմեան զաւակները ամենաանգութ կերպով տիրացել էին հայերի մնացած գոյքերի համարեա մեծ մասին։ Յոյների կողոպուտը այնքան օր ցերեկով էր կատարուել, որ Միտրապոլիտ Խրիսանթը 1916 թուի Զատկական տօներին ս. հաղորդութիւն չէր տուել նրանց, առարկելով թէ նրանք արժանի չեն իբր կողոպտիչներ։ Իսկ ինչ որ զերծ մնաց յոյների թալանից լրացրին ռուսական նախկին ռեժիմի ոստիկաններն ու պաշտօնեաները...

Ահա այսպիսի պայմաններում Հայկ. Կոմիտէն կազմակերպուեց և սկսեց գործել 1916 թուի ապրիլի 25-ին։ Բնականաբար նրա գործունէութեան առաջին ջանքերը եղաւ նախ հետզհետէ սարից իջնող և գրաւուած վայրերից քաղաք թափուող հայերին անմիջական և անհրաժեշտ օգնութիւն հասցնել, որբերը որոնելու և երկրորդ՝ գէթ մնացած հայապատկան գոյքերը և ապրանքները մի կերպ թալանից ազատել։ Այս տեսակէտից Կոմիտէն ամեն ջանք չէ խնայել, իր միջոցներով հոգացել է գաղթականների կարիքները, նաև իր թռուցիկ խմբերի շնորհիւ հաւաքել է մօտ 250 որբ, որոնց մէկ մասը Պաթումի և Սուխումի որբանոցներն են փոխադրուած և մէկ մասն ալ մօտաւոր ազգականներին յանձնուած է։

Կոմիտէն դեռ նոր էր սկսել գործի, և ահա անսպասելի կերպով Ռուսական հին ռեժիմի ներկայացուցիչների կողմից փակուեցաւ և նրա գրասենեակը կնքուեցաւ։ Կոմիտէն փակ մնաց երեք և կէս ամիս (1916 օգ. 12—դեկ. 1) և ահա դարձեալ այս անտէր ժամանակամիջոցում հայկական պահեստը և խանութները կրկին թալանուեցին, և հայկ. անշարժ կալուածքների պահպանութեան գործը քայքայուեց։ Կոմիտէն փակման գործում (կարելի է ասել նոյնիսկ պատճառը) տխրահռչակ դեր կատարեց երդուեալ հաւատարմատար Ալէքսանդր Գալէմքարեանը, որը Պաքուից գալով Տրապիզոն մի սուր և զրպարտիչ գանգատ էր տուած Կոմիտէի հասցէին, որի հիման վրայ ժանտարմի պետ Տինկան, որին անտանելի էր հայկ. կոմիտէի գոյութիւնը, աճապարեց առանց քննելու խնդիրը փակել Հայկ. Կոմիտէն։ Գալէմքարեանը վաղուց ծանօթ էր Տինկային, այդ տխուր պատմութիւնը յայտնի է հասարակութեան, որովհետև իր ժամանակին հայ թերթերը, «Մշակ» և «Հորիզոն», յօդուածներ նուիրեցին այդ անցքերի մասին։

1916 թ. դեկ. 1-ին վերաբացուած Կոմիտէն շարունակեց սկսուած գործը։ Թէպէտև այդ միջոցին կազմակերպուեցին Կ. Հ. Բ. Ընկերութեան և Եղբայրական Օգնութեան Տրապիզոնի մասնաճիւղերը, բայց այս վերջինները միմիայն անուանապէս գոյութիւն ունեցան, որով դարձեալ թէ հայկական ստացուածքները կառավարելու և թէ գաղթականական գործը ամբողջովին գրեթէ մնացին դարձեալ կոմիտէի ուսերին։ Իւրաքանչիւր գաղթական (բացի 20—40 տարեկան աշխատանքի ընդունակ այր մարդոցմէ) Քաղաքների Միութեան Կոմիտէի միջոցաւ ստացաւ ամսական 7 ռ., իսկ Կոմիտէն իր կողմից աւելի կարիքաւորներին վճարեց 8 ռ. ևս, որով այս վերջինները ստացան ամսական 15 ռ., նպաստ։ Նաև բաժանուեց հագուստներ և տան անհրաժեշտ կարասիներ։

Կոմիտէն հայկ. պահեստներում և խանութներում մնացած ապրանքները ի մի հաւաքեց։ Նաև հետապնդեց մասնաւորների և զանազան հաստատութիւնների կողմից վերցուած ապրանքների և կարասիների յետ ստանալու գործը յաջողուեց մի մաս ստանա և դրանք բոլորը հրապարակային աճուրդով վաճառելով գոյացաւ 94,770 ռ. յետապնդումը կը շարունակուի և յոյս ունենք, որ նոր ապրանքներ ևս ձեռք անցնէ։ Ռէժիի մօտ գտնուած մեծ քանակութեամբ հայկական ծխախոտների և պանքում պահ դրուած հայկական դրամներ, արժեթուղթեր, Կոմիտէին յանձնելու համար հարկ եղած դիմումները կատարուած են։

Ձեռնարկելով անշարժ կալուածների ցուցակագրութեան գտնուեցին միայն քաղաքում 655 հայկ. տներ և խանութներ հետևեալ վիճակի մէջ. 186 տուն և 12 խանութ բոլորովին քանդուած, 36 տուն կիսաքանդ և 321 տուն ու խանութներ կանգուն։

Մօտ 89 տուն և խանութ վարձու տրուած են Կոմիտէի կողմից, իսկ 95 տուն և խանութ վարձու տրուած են տէրերի, փոխանորդների և կամ մօտաւոր ազգականների միջոցով։ 137 տուն և խանութ գրաւուած են զինուորական զանազան հաստատութիւնների կողմից։ Մասամբ ժամանակի սղութեան և մասամբ էլ որոշ դժուարութիւնների պատճառով Կոմիտէն չկարողացաւ Տրապիզոնի շրջանի գիւղերի հայկ. հողերի մասին կարգադրութիւն անել։ Սրանք տէրերի մօտաւոր ազգականների կողմից մշակուեցին կամ վարձու տրուեցին։

Հայկական այլևայլ մագազիններից յայտնուիս են գրաւուած 100,000 ռուբլու զանազան ապրանքներ, որոնց ակտերը Կոմիտէի մօտն են։

1916 թուի օգ. 12—դեկ. 1 Կոմիտէի փակ եղած այդ ալան թալանի ժամանակ հայկական ընդհանուր վնասը եղած է 526,500 ռ., որի մասին ներկայ յունիս ամսին քաղաքս եկող Կովկասի քոմիսար Խարլամովին ներկայացուած խնդրագրին կցուած է վնասների անուանական ցանկը և հատուցումը պահանջուած։

Տրապիզոնի Հայկ. Կոմիտէի Նախագահ՝
Արշակ Առաքելեան

## ՑՈՅՑԵՐԸ ԵՐԵՒԱՆԻ ՄԷՋ

Վերջին քանի մը շաբաթէն ի վեր Երևանի մէջ ապրանքներու և կենսամթերքներու գները օրըստօրէ բարձրացան անհամեմատ կերպով. հոս առևտրականներու դասակարգ մը կայ, որու շահասիրութիւնը ծայրայեղ է դարձեր, որ պատահած մէն մի առիթէն կաշխատի օգտուել և ապրանքներու ու կենսամթերքներու գները առասպելական չափերու հասցնել։

Այդ հանգամանքը առիթ տուաւ յուլիս 5-ի անկարգութիւններուն և խանութներու փակման։ Տնտեսական զօրաւոր տագնապ մը առաջ եկաւ և քաղաքիս տասնեակ հազարաւոր բնակչութիւնը մատնուեց սովի։ Դրութիւնը կը շարունակուի դեռ ևս մինչև օրս և խանութները կը մնան փակ։

Սոյն կացութեան առիթ տուողը եղած է հետևեալ դէպքը.

Երբ զինուոր մը կուզէ շուկայէն ձմերուկ գնել, գինը սովորականէն թանգ կըսուի իրեն, զինուորը կը բողոքէ, անոր կը միանան կարգ մը ուրիշ զինուորներ և կերթան բողոքելու տեղիս Գործ. Կոմիտէին։

Շատ չանցած զինուորներէն մաս մը կը յարձակին մի քանի խանութներու վրայ և կսկսին թալանել. խանութպաններ խանութնին փակելով կը փախչին։ Քաղաքապահները ամբոխը ցրուելու համար կը կրակեն, որու ընթացքին կսպաննուի մէկը և կը վիրաւորուի ուրիշ մը։ Բարեբաղդաբար թալանը շուտ վերջացաւ և խուճապը դադարեց։

Գործադիր Կոմիտէն զինուորներու գնդերէն մի մի ներկայացուցիչ հրաւիրեց և վաճառականներու ներկայացուցիչների հետ համախորհուրդ սակագին նշանակեց։

Տեղիս Զինուոր. և Բան. Խորհրդի ներկայացուցիչներու կողմէ միացեալ՝ կոչ մը հրատարակուեցաւ, որով կը յանձնուէր թէ այդ ցոյցերը լոկ թանգութեան արդիւնք են, պէտք է հեռու մնալ նման ցոյցերէ, որոնք կրնան հակայեղափոխութիւն ստեղծել։

Կառավարութեան կողմէ կնքուած են տեղիս վաճառականներու խանութները և յայտարարուած է որ թաքցուցած ապրանքնին հանեն և ծախեն որոշուած սակագնով։

Երկու օր է, որ սկսեր է գործադրուիլ նշանակուած սակագինը և կարգը զգալապէս հաստատուած քաղաքին մէջ։

Ց. Աղոնիս

Երևան, յուլիս 12

# Գեղարուեստ

* * *

Ամպ ու լուսին սարի ուսին
Աչք են ածում ամեն կողմ.
Երկինքը՝ ջինջ, աստղերն՝ անինջ,
Չկայ աղմուկ, չկայ հողմ։

Սիրտս խաղաղ, լուսաշաղախ,
Փայլ է տալիս աստղի պէս.
Ու սրտիս մէջ յաւէտ անշէջ
Կան երազներ՝ այնքան հեզ.

Ես երկրում՝ չեմ, ես՝ երկնածեմ,
Հոյլերի մէջ աստղերի.
Կեանքից հեռու յածող ուրու,
Երկրպագու շողերի . . .

Էջմիածին

Ց. Պետրոսեան

# Տարեգիր Կ. Հ. Բ. Ընկ.

Կ. Հ. Բ. Ը. Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է—Լոզովա կայարանից պ. Կարապետ Մարտիրոսեանից յօգուտ գաղթականների 50 ռուբլի, և յօգուտ Հայաստանի վերաշինութեան 50 ռուբլի, ընդամենը 100 ռուբլի։

—Թեմիր-Խան-Շուրայից—Լիւզմիլա Կամարովսկուց յօգուտ գերիների ազատման 10 ռուբլի։

— Սիբիրից Թիֆլիս ժամանեց հայ գերիների մի խումբ 120 հոգուց բաղկացած, որոնց տեղաւորման և սննդի ծախսերը հոգաց Կ. Հ. Բ. Ընկերութիւնը։

## ՀԱՅԿ. ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷ

Յուլիսի 18-ին կայացաւ Հ. Կ. Կոմիտէի նիստը, նախագահութեամբ պ. Ս. Յարութիւնեանի, ուր եղան զեկոյցներ ու կայացան հետևեալ որոշումները.—

1) պ. Նախագահը զեկուց Թայիրեանի առաջարկ-գրութիւնը որով վերջինս դիմելով Կոմիտէիս խնդրում է իր հոգատարութեան տակ գտնուող Մեծ-Ղարաքիլիսայի որբանոցից տանկահայ 24 որբերի հոգատարութիւնը վերցնի իւր վրայ, նպաստելով նրանց ընդհանուր նորմայի համաձայն։ Առաջարկը ընդունուեց, որոշեց առանձին գրութեամբ յայտնել տիկնոջը, որ Կոմիտէս ընդունում է առաջարկը, սակայն այն պայմանով, որ այդ որբանոցը ենթարկուի ընդհանուր հսկողութեան, որբանոցի 24 որբերի անունները անցկացուի ընդհանուր ցուցակի մէջ։

2) Հայկ. Կենտր. Կոմիտէի կից կազմուած երդնկացիների միութիւնը առանձին գրութեամբ ներկայացրեց ժողովին միութեան պատկերը սկսած 1916 Թ. նոյեմբ. 1-ից մինչև 16 յուլիսի 1917 Թ. դրամական գործառնութիւնների մի հաշուեկշռով, որից երևաց որ զանազան աղբիւրներից մուտք է եղել 7475 ռ. և ծախս՝ 5538 ռ. 76 կ.։

3) պ. Նախագահը զեկոյց Կոմիտէիս Գանձակի լիազօր պ. Ա. Բորեանցի գրութիւնը, որով յայտնում է որ Վանի Հայոց Ձորի Քերծ գիւղից գաղթած գաղթականութիւնը մօտ 40 տղամարդ ցանկութիւն են յայտնում վերադառնալ այդ վայրերը երկրագործական աշխատանքների համար, այդ առթիւ խնդրում է որ նէ կարգադրութիւն։

Որոշուեց հեռագրով պահանջել այդ գաղթականութեան ցուցակը, ապա դիմել և ստանալ վագոն որ ճանապարհել նրանց։

4) Զեկուցուեց Տրապիզոնի Հայկ. Կոմիտէի տեղեկագիրը իւր ամբողջութեամբ, որից երևաց որ Կոմիտէն իւր սկզբնաւորութեան օրից պ. Արշակ Առաքելեանցի նախագահութեամբ գործել է շատ արդիւնաւէտ, ըստ որում որոշուեց շնորհակալութիւն յայտնել Կոմիտէին։

## ՊԱՐԵՆԱՒՈՐՄԱՆ ԲԱԺԱՆՄՈՒՆՔ ՊԵՏ. ՄԻՋՈՑՆԵՐՈՎ

Յուլիսի 6—20-ը ալիւր ուղարկուած է Գանձակ 3 վագոն, Աղստաֆա՝ 6, Աշտարակ 5, Ալէքսանդրապոլ՝ 11, Ղամարլու՝ 3, Վաղարշապատ՝ 4, Իգդիր՝ 5, Ղուրդուղուլի՝ 4, Երևան՝ 5, Ղարս՝ 6, Սարիղամիշ՝ 4, Մեծ Ղարաքիլիսա՝ 2 և Ալաշկերտ՝ 1, ընդամենը 59 վագոն։

Ցորեն ուղարկուած է Ղարս 2 վ., Երևան՝ 5, Վաղարշապատ՝ 3, Իգդիր՝ 2, Գանձակ՝ 1, Ղամարլու՝ 1, Ալէքսանդրապոլ՝ 4, Ղարաքիլիսա՝ 2 և Աղստաֆա՝ 1, ընդամենը 21 վագոն։

Շաքար ուղարկուած է Վաղարշապատ և Իգդիր 35-ական պարկ, Ղարաքիլիսա՝ 75, Գանձակ՝ 40, Երևան՝ 75, Ղարս՝ 35, Սարիղամիշ՝ 50, ընդամենը 1867 պ. 11 ֆ.։

Սապոն ուղարկուած է Ղարս 70 պ. և Սարիղամիշ՝ 120, ընդամենը 200 պ.։

Թէյ ուղարկուած է Ղարս 6 պ. և Սարիղամիշ 12 պ. ընդամենը 21 պ.։

Ժամանակաւոր Կառավարութեան Կովկասեան Առանձին Կոմիտէի անդամ Պապաջանեանի խնդրանօք Ընկերութիւնս Նոր-Բայազէդում հացի կրիզիսի պատճառով, տուեց Նոր-Բայազէդի պարենաւորման կոմիտէին 2 վագոն ալիւր։

Ղարսի և Ալէքսանդրապոլի պահեստների կառավարիչների տուած տեղեկութեան համաձայն՝ տեղական պարենաւորման կոմիտէները ապօրինի կերպով գրաւել են գաղթականների համար ստացուած Ալէքսանդրապոլում 5 վագոն, իսկ Ղարսում 4 վ. ալիւրը, որի մասին դիմում է արուած երկրագործական մինիստրի Կովկասի լիազօրին, որպէս զի վերջինս իւր կողմից հարկաւոր կարգադրութիւն անի պարենաւորման կոմիտէներին՝ չը գրաւել գաղթականների համար ստացուած ալիւրը։

# Քրոնիկոն

Տաճկաստանի գրաւուած վայրերի Գեներալ-Կոմիսարը աչքի առաջ ունենալով դաշտային աշխատանքների կարեւորութիւնը եւ այն՝ որ Ժամանակաւոր Կառավարութիւնը յանձնարարել է Գեն.-Կոմիսարին ամեն կերպ աշխատել ազատելու զանազան գաղթականութեան տուեալք ծախսերից, դրել է հնարաւոր վերադարձող գաղթականութեան վերաբնակեցնել Արխաւէ, Էտինէ, Ռիզէ, Սիւրմէնէ—Խամուրգեան, Ճորոխ, Բայբուրդ, Իղ, Թորթում, Էրզրում, Աշկալա, Մամախաթուն, Կարա-Քիլիսէ, Դիադին, Բայազէդ, Վան, Ալաշկերտ, Հասան-Կալա եւ Խորասան վայրերում։

—Սահմանադիր Ժողովի ընտրութեան Կովկ. Կենտ. Բիւրոն որոշել է այս օրերս բանալ ձրի դասընթացներ, ուր պիտի դասախօսուի ընտրական գործի կազմակերպութեան, տեխնիկայի, ցուցակագրութեան սիստեմի մասին, և պարզաբանուեն բոլոր հրահանգներն ու միջոցները։ Որոշուած է ընտրական կոմիսիային խնտրուկտորներ հրաւիրել 9 հոգի ամսական 200 ռ. ռոճիկով և 12 ռ. 50 կ. օրածախսով՝ ճանապարհորդութեան ընթացքում։

—Քաղաքային ընտրութիւնների համար կուսակցութիւններին իրաւասութեան թեկնածուների ցուցակների ներկայացնելո

ժամանակը արդէն լրացել է։ Մինչև այժմ ներկայացուած են այսպէս՝ № 1 Սոցիալ-դեմոկրատների –(1-0 թեկնածու), № 2 Ազգային դեմոկրատն. (40 թեկնածու), № 3 Սոց.-Յեղափ. (100 թեկնածու), № 4 Հայ Յեղ. Դաշնակցութեան (50 թեկնածու), № 5 Վրաց Սոց.-Ֆեդեր. (30 թեկնածու), № 6 Նաւթլուղի ազգաբնակութիւնից, № 7 Միացեալ հայ ժողովրդական և ժողովրդական կուսակցութեան կողմից, № 8 Բոլշևիկների կողմից, № 9 Հնչակեանների կողմից։

—Զինուորական քննիչ յանձնաժողովը միլիցիայի պետին յայտնել է որ այսուհետև փողոցում ձերբակալուած հարբած զինուորներին պէտք է ուղարկել կամ իրենց զօրամասերը և կամ յանձնել կոմենդանտի հսկողութեան։

— Սուրմալուի շրջանից Թիֆլիս է եկել մի պատգամաւորութիւն, որ խնդրում է Առանձին Անդրկովկ. Կոմիտէից տալ իրենց զինուորական օգնութիւն, որովհետև շրջակայքի բնակիչները թալանում են իրենց անդադար։

—Ժամանակաւոր Կառավարութիւնը առաջարկել է Առանձին Անդրկովկ. Կոմիտէին շտապով ներկայացնել պաշտօնից հեռացուած հին ռեժիմի ծառայողների ցուցակը։

—Թիֆլիսի Նոր Ակումբը ենթարկուած է վերափոխութեան։ Նա անուանուած է «Վրաց Ակումբ»։ Մշակւում է այդ ակումբի համար նոր ծրագիր։

—Թիֆլիսի տրամւայի գլխաւոր ինժեներ Ա. Կազկերը քաղաքային վարչութեանն է ներկայացրել մի նախագիծ, որով առաջարկւում է տրամւայի ամբողջ գործը ենթարկել հիմնական վերանորոգութեան։ Այդ գործը որ քաղաքին կը նստի 4,810,210 ռ., Ա. Կազկերը գտնում է անյետաձգելի, որովհետև տրամւայը շուտով կը հասնի իր քայքայման ծայրին։

—Երևանի նահանգական պարենաւորման կոմիտէն Անդրկովկասեան Առանձին Կոմիտէին հաղորդում է, որ մթերքների ցուցակագրումը և գրաւումը Երևանում տեղի չի ունենում, որովհետև կեանքն այնտեղ կանոնաւորուել է և վաճառականները իջեցրել են մթերքների գները։

—Յուլիսի 18-ին վրաց կաթողիկոսի տեղապահ Լէոնիդ եպիսկոպոսի մասնակցութեամբ տեղի ունեցաւ վրաց եկեղեցու աւտոկեֆալիայով զբաղուող վարչութեան ժողովը, որը որոշեց Վրաստանի կաթողիկոսի ընտրութիւնը նշանակել օգոստոսի 15-ին, իսկ սեպտեմբերի 18-ին հրաւիրել եկեղեցականների ժողով։ Նոյն օրը, որոշուած է կատարել և ընտրուած կաթողիկոսի օծումը։

—Սահմանադիր ժողովի ընտրութիւնների հարցով զբաղուող նահանգ. կոմիտէին մասնակցելու համար նահանգական գործադիր կոմիտէի կողմից ընտրուել են Պողով և Շատսկիյ։

—Յուլիսի 17-ի զինուորական շրջագայութեան ժամանակ ձերբակալուած են մօտ 300 մարդ, որոնցից 4-ը քրէական յանցաւորներ են, որոնք նոր ազատուած բանտից, 25 խակական դասալիք զինուորներ, 100-ը կասկածելի վկայականներ են ներկայացրել, իսկ մնացածները չեն կարողացել ներկայացնել ոչ մի վկայական իրենց զօրամասերից։

—Էրզրումի շրջանի կոմիսար է նշանակուել նահանգական պարենաւորման քարտուղար Գլոտովը։

— Քաղաքների Միութեան Թիֆլիսի գլխաւոր կոմիտէն Մոսկուայից տեղեկութիւն է ստացել, որ Միութեան Կովկասի բաժանմունքի նախահաշիւը կը քննուի մօտ օրերս։ Անցեալ տարուայ նախահաշիւը հասնում էր 23 միլ. ռուբլու, այս տարի հասնում է 47 միլիոնի։

# Համաշխարհային պատերազմը

Ռուսաց արեւմտեան ճակատում ռուսների նահանջը շարունակւում է։ Ռիգայից սկսած մինչև Կարպատները գերմանացիք առաջ են ընթանում, աւելի և աւելի թափանցելով ռուսական հողը։ Յուլիսի 18-ին թշնամին անցաւ Զբրուչա գետը Գուսիատինից հիւսիս և տիրեց մեր դիրքերին, սակայն ռուս զօրքի յաջող յարձակումից յետոյ վերագրաւուեցին վերցուած դիրքերը։ Թշնամին փորձում էր անցնել Զբրուչ գետը, բայց չկարողացաւ։

Մեր զօրամասերը թշնամու ճնշման տակ մաքրեցին Զալէշչիկը։ Դնեստրից հարաւ, Զալեշչիկ-Սնեատին գծի վրայ թշնամին ուժեղ յարձակումի սկսեց։ Դիրքերը խլւում էին ձեռքից ձեռք, մինչև որ օգնական ոյժեր ստանալով թշնամին նեղեց մեր ոյժերը։

Յուլիսի 19-ին, Բրոդուց հարաւ Զարկովի շրջանում թշնամին թնդանօթամարտից յետոյ գրոհ տուեց և խլեց մեր դիրքերը, բայց օգնութեան հասնող մեր գնդերը կարողացան ջարդել թշնամուն և յետ խլել կորցրած դիրքերը։ Գալիցիայում Տրեմբովլի ուղղութեամբ մեր զօրամասերը յարձակումով գրաւեցին Գրժիմալովի շրջանի դիրքերը, Զբրուչ գետը անցնել փորձող թշնամու բոլոր փորձերը անցան անօգուտ։ Յուլիսի 18-ին գերազանց ոյժերով թշնամին ուժեղ գրոհ սկսեց Զբրուչ և Դնեստր գետերի միջև. ռուսները տեղի տուին և քաշուեցին Զբրուչի միւս ափը, ունենալով սպաների մեծ կորուստ։ Դնեստրի և Պրուտի միջև յամառ և ուժեղ կռիւներից յետոյ թշնամին նեղեց մեր զօրքերին։ Կարպատներում, Սինիտուլի շրջանում թշնամին յարձակումներ է սկսել։

Ստացուած վերջին տեղեկութիւնների համաձայն՝ գեներալ Կորնիլովը, որ Գերմանիայից գերութիւնից փախել էր և ապա Պետրոգրադի զինուորական շրջանի 11-րդ բանակի հրամանատարն էր, նշանակւում է գերագոյն հրամանատար։

Կերենսկին Բրուսիլովի և Կորնիլովի հետ աշխատում են բանակի կազմալուծուած դրութիւնը վերանորոգել։ Արդէն ընդունուած է մահուան պատիժ կռուից փախչողների համար։ Եթէ երբէք ուժեղ դիսցիպլինա պահպանուի նահանջող բանակում, յոյս կայ որ թշնամու յարձակումը պիտի զսպուի։

Անգլիական ճակատում՝ բրիտանացիք ֆրանսեացիների հետ միասին յուլիսի 18-ին ընդհանուր յարձակում են սկսել Լիսից հիւսիս ընդարձակ ճակատի վրայ։ Յարձակումը ծաւալւում է ամբողջ ռազմաճակատի վրայ։ Դաշնակիցները յաջողութեամբ առաջ են ընթանում։

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ
Հրատ. Կ. Հ. Թ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

# Յայտարարութիւններ

Հայկ. կենտ. Կոմիտէի հովանաւորութեան տակ գտնուող որբանոցների համար հարկաւոր են միջնակարգ կրթութեամբ հմուտ փորձառու կառավարչուհիներ եւ կառավարիչներ։ Ցանկացողները թող դիմեն Կոմիտէի գրասենեակը, Абасъ-Абадская, 7.

Тип. «СЛОВО» Гимназическая ул. № 1